ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՏԵՂԵԿԱԳԻՐ
ИЗВЕСТИЯ АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР

Հասարակական գիտություններ № 2, 1955 Общественные науки

Վ. Պետոյան

# ՍԱՍՈՒՆԻ ԹՈՌՆԻԿՅԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Ներկա հոդվածը վերաբերում է հայ ժողովրդի պատմության ամենից քիչ ուսումնասիրված շրջաններից մեկին՝ Թոռնիկյան իշխանությանը, որը գոյություն է ունեցել Սասունում և Տարոնում 1054—1207 թթ.։

Մենք հավակնություն չունենք շարադրելու այդ շրջանի գիտական պատմությունը. մեր նպատակն է որպես նյութ ներկայացնել փաստեր, որոնք կարող են օգտագործվել հայ ժողովրդի պատմության դասընթացը կազմողներին կամ այդ մասին առանձին ուսումնասիրություններ գրողներին։

* * *

Բագրատունյաց իշխանության անկումից և Անիի գրավումից հետո Արևելքում ուժեղանում և դեպի Արևմուտք են արշավում սելջուկները, իսկ Արևմուտքում իր մայրամուտն է ապրում բյուզանդական կայսրությունը։

Արևելքում և Արևմուտքում տեղի ունեցող քաղաքական այս իրադրության պայմաններում Արևմտյան Հայաստանի երկու լեռնաշխարհներում՝ Տավրոսի և Անտիտավրոսի Ամանոսի բարձունքներում, Սասունում և Մարաշում հայ ֆեոդալական իշխանություններ են ստեղծվում, որոնք պահպանում են իրենց անկախությունը և պայքարում սելջուկյան արշավանքների դեմ։

Մուշեղ Մամիկոնյանի որդի Թոռնիկ Մամիկոնյանը և Տարոնի Վարաժնունյաց (այժմ Բուլանուխ) գավառից Փիլարտոս Վարաժնունին քաղաքական ասպարեզ են իջնում՝ Թոռնիկ Մամիկոնյանը Սասունի Թոռնիկյան իշխանության, իսկ Փիլարտոս Վարաժնունին՝ Ամանոսի հայկական իշխանության հռչակումով։

Թոռնիկ Մամիկոնյանը Տարոնի Բերդակ գյուղից էր, ինչպես երևում է իր որդու՝ Զորտուանելի հիշատակարանից, Մամիկոնյան նախարարական ցեղից և իր կրթությունն ստացել է, հավանաբար, Բերդակի մոտ գտնվող Առաքելոց կամ Թարգմանչաց վանքում, ինչպես երևում է Պողոս Տարոնացու՝ այդ վանքի վանահոր թղթերից։ Հետագայում նա Բերդակը նվիրում է վանքին, երբ որպես Թոռնիկյան իշխանության հիմնադիր, փոխադրվում է Աշմուշատ (Բալու), որը և դարձնում է Թոռնիկյան իշխանության մայրաքաղաքը։

Փիլարտոս Վարաժնունին ծնվել է Մշո Բուլանուխ գավառում, ինչպես երևում է Վարաժնունի ազգանունից։ Նա Տարոնից փոխադրվում է Բյուզանդական իշխանության մաս կազմող Փոքր Հայք, որտեղ ստանում է հունական կրթություն, ապա՝ մտնելով հունական բանակը, ստանում է ռազմական կրթություն, հիմնում Ամանոսի հայկական իշխանությունը՝ Մարաշ կենտրոնով։

Սասունի Թոռնիկյան իշխանության մասին Մատթեոս Ուռհայեցին իր «Պատմություն Հայոց» գրքում (էջ 249—251) ասում է, որ այդ իշխանության ռազմական ուժը հասնում էր 56 հազար հետևակի և 6 հազար հեծյալի։

Թոռնիկ Մամիկոնյանին ժամանակակից արաբ պատմիչ Իբն-էլ-Աթիրը Հիջրեթի 427 (1056) թվականին գրում է. «...Այստեղ (Խլաթ կամ Ախլաթ) հայ ռայաները (հպատակները) սրանց (սելջուկների) ճամբան կտրեցին և իրենց օգնական գտան Սանասանյայքն (Վ-Ն-Ա) որ նմանապես հայոցմե են։ Այս Սանասանյայք նույն ժամանակ Խլաթի մոտերն իրենց անառիկ ու ամուր բերդերուն տեր էին... իրենց ամուրներն ու անկախությունն ալ պահած էին... Սասունցվոց բերդերուն ամրությունն ու թիվը, այն լեռնագավառին մեջ հաղթող հանդիսանալու դժվարությունը, և Հոռոմոց մոտ ըլլալն, որ անտարակույս անոնց օգնության պիտի փութային»[1]։

Թոռնիկ Մամիկոնյանի և Փիլարտոս Վարաժնունու ֆեոդալական իշխանությունների միջև կատաղի մարտեր են մղվում։ Փիլարտոսը ցանկանում է Սասունն ու Տարոնը միացնել և մի հզոր իշխանություն ստեղծել Ամանոսի լեռնաշխարհում։ Թոռնիկ Մամիկոնյանը դիմադրում է նրան և թուլացնում, իսկ ինքը 1073 թ. Մուֆարկինի Ամրքափր ամիրայի և Փիլարտոսի միացյալ դավադրությամբ ընկնում է ողբերգական մահով[2]։

Որպես ժառանգներ թողնում է երկու որդի՝ Չորտուանելին և Վասակին։

Նրան հաջորդում է իր մեծ որդին՝ Չորտուանելը (1073—1127), որը հոր դավաճանական սպանության ժամանակ դեռ պատանի էր։

Գեորգի Չորտուանելը բարեկամական հարաբերություններ է մշակում Վրաստանի հետ, որը, մեր կարծիքով, անդրադարձել է «Սասունցի Դավիթ» էպոսում։ Այստեղ Խանդութ Խաթունի քավոր Գեորգը հիշեցնում է Չորտուանելին։

Սասունի Թոռնիկյան իշխանությունը ունեցել է կաթողիկոսություն Հայնիում։ Սամվել Անեցին գրում է «Ի ՇԼԱ (1082) թվականին Լիպարիտն տաճիկ եղև և Կիւրիկէ Շաքոյ թագաւորն ի Սուլտանն չոգաւ և դարձաւ անդրէն դլուատով։ Ի սոյն ժամանակս ի դ. բաժանեցաւ հայոց կաթողիկոսութիւն տէր Վահրամ, տէր Գրիգորիս յԵգիպտոս, տէր Բարսեղ յԱնի, Տէր Պօղոս հայրն Վարագայ ի Մարաշ, տէր Թորոս ի Հայնի»[3]։

Կաթողիկոսանիստ Հայնիի[4] նշանավոր վանքերից էր Առաքելոց վանքը, որն իր գոյությունը պահել էր մինչև մեր ժամանակները՝ 1915 թ. և ուներ իր դպրոցն ու կալվածները Սասունի Խուլբի շրջանում։

Այդ ժամանակաշրջանում է, որ Տարոնի Առաքելոց կամ Ղազարա վանքը դառնում է կուլտուրայի և գիտության օջախ, որի վանահայրն էր Պողոս Տարոնացին (11-րդ դար)։ Հոռոմ Թեոփիստեին գրած թղթի մեջ, որ կոչվում է «Թուղթ երանելւոյն Պօղոսի Տարոնացւոյ Յաղթող ախոյան Վարդապետի, ընդդէմ Թէոփիստէ Հոռոմ փիլիսոփային» Պողոս Տարոնացին գրում է.

«Ով պատուական անուն Թէոփիստէ... զթուղթն զոր գրեցաք, ընկալեալ ընթերցայ և հասու եղէ ամենայն դրելոցս, որ է ի նամակի աստ, զոր առաքեցի, յառաճնմէ և բերաւ առ իշխանն հայոց Սասանու առ Նուլերսիմուս

[1] Վ. Տոմաշեկ, Սասուն և Տիգրիսի աղբերաց սահմանները, Վիեննա, 1896, էջ 38։
[2] Սպանության մանրամասնությունները տես Մատթեոս Ուռհայեցի, 1869, էջ 247—258։
[3] Սամվել Անեցի, Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, Վաղարշապատ, 1893, էջ 118։
[4] Նույն տեղում, 1892, էջ 18, ծանոթ. 5։

(nouvelisimus) Զորտուանելս, որդւոյ Թոռնկայ (որ յաթոռն կա). և ի նոյնաժամայն առ մեզ հասուցին զգիրս քո յամսյանն օոգոստոսի է. եւ ի թուականութեանս հայոց ՇԾ (1101). եւ բերաւ ի վանքս Ղազարու»[1]։

Այս ձեռագիրը, գրված Սասունի իշխան Զորտուանելի ժամանակ, ցույց է տալիս որ Զորտուանելը, ինչպես ընդհանրապես Սասունի մյուս իշխանները, տիտղոսներ ստանում էին Բյուզանդիայից։ Զորտուանելի Նուվելիսիմուս տիտղոսն էլ բյուզանդական է[2]։

Պողոս Տարոնացու դրածներից երևում է, որ Զորտուանելի ժամանակ Թոռնիկյան իշխանությունը տարածվել է Բալուից, Ծոփքից մինչև Միջագետքի հյուսիսային սահմանը՝ մինչև Մծբին (այժմ Նիսիբին) քաղաքը, ընդգրկելով նաև ամբողջ Տարոն-Տուրուբերանը, մինչև Ազնվաց Ջոր (Սալնո Ձոր) Բաղեշի մոտ, մայրաքաղաք ունենալով Աշմուշատը։

Զորտուանելը Թոռնիկյան իշխանությունը կառավարում է 1073 թ. մինչև 1127 թ., 54 տարի և մահանում է 1127 թ., հաջորդ թողնելով իր որդի Վիգենին։

Զորտուանելի որդի Վիգենի գահակալության սկիզբն է 1127 թ.։ Այդ մասին Ակնա սուրբ Գևորգ եկեղեցում գտնվող «Սասունցի» կոչված ավետարանում գրված է հետևյալը.

«Ի հայրապետութեան տեառն Ներսեսի հայոց կաթողիկոսի և ի տէրութեան Սասնոյ Վիգենւոյ մեծի պատուէլէսիմոսի որդւոյ Զորտուանելի, թոռ(ի)ն Թոռնկայ մեծի հզօրի և քաջի, բնիկ յԱստուծոյ հաստատուն հիմնակառուցեալ ունի զաթոռ հայրենի տերութեան իւրոյ եւ ի թուականութեանս հայոց ի ՌԺԸ (1169) հրամանաւ երանելի և քրիստոսասէր թագուհւոյ Մելեքսաթոյ, ամուսնոյ Վիգենայ որ է յազգի Արծրունի և ի շառաւիղն սրբոյն Վարդանայ դստեր մեծ իշխանին Մոկաց Հմայակի»[3]։

Ինչպես երևում է վերոհիշյալ հիշատակարանից, Վիգենի կին Մելեքսաթին, Արծրունյաց շառավիղից Մոկաց մեծ իշխանի Հմայակի աղջիկն էր։ Ալիշանը իդեալականացնելով նրանց, գրում է.

«Դատ առնելով որկելոց, օգնական լինելով նեղելոց և ապավէն ամենայն փախուցելոց, շինելով զեկեղեցիս... և յամենայնի առաջին սուրբ նահապետացն և թագաւորացն նմանեալ...»[4]։

Զորտուանելի որդի Վիգենը իշխում և գործում էր Խլաթի թագավոր Իբրահիմ Շահի (1112—1127) որդի Միհրան շահի (1128—1185) ժամանակ։

Վիգենը, որոշ հայ պատմիչների կարծիքով, Մուֆարկինի՝ Օրդուկյանների ճնշմանը չդիմանալով նախընտրում է Խլաթի Միհրան շահի գերիշխանությունն իր երկրի վրա, քան թե Օրդուկյաններինը, և այդպես էլ անում է։

Վիգենը և Մելեքսաթին ունեցել են երեք տղա և մի աղջիկ, վերջինիս՝ Կատարինեի հիշատակը հավերժացնելու համար ծնողները գրել են տալիս «Սասունցի Ավետարանը» և նրանում եղած հիշատակարանը, որը պարունակում է հետաքրքրական փաստեր[5]։

[1] Պողոս Տարոնացի, Թուղթ Երայնելւոյ Պողոսի Տարոնացւոյ Ցաղթող Ախոյան վարդապետի, ընդդէմ Թեոփիստե հոռոմ փիլիսոփային, Կոստանդնուպոլիս, 1752, ձեռագիր № 840։

[2] Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, հատոր 293, Վենետիկ, 1901, № 6։

[3] Գ. Վ. Սրվանձտյանց, Թորոս Աղբար, հատոր Բ, Կ. Պոլիս, 1884, էջ 308—309։

[4] Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, Վենետիկ, 1901, էջ 393։

[5] Այս ավետարանը գտել է Հ. Ճանիկյանը Ակն քաղաքի ս. Գևորգ եկեղեցում և նկարագրել իր «Հնութիւնք Ակնայ» գրքում հետևյալ տողերով.

«Ավետարան Սասունցի անվամբ, երկաթագիր մագաղաթյա մեծադիր, իբր 10 օխա

Մի քանի տարի անց, 1131 թ. պարսից մեծ զորավար Ելտկուզը հարձակվում է Միրան Շահի — Արմենի վրա, որին օգնության է շտապում Վիգենը, նրան դուրս են շպրտում երկրից և ստիպում հաշտություն կնքել։

Վիգենի ժամանակ Մուֆարկինի իշխան Սուլման Բ. Նասր-էդ-դին Մուհամեդը հարձակումներ է գործում Սասունի վրա։ Վիգենին ժամանակակից Միքայել Ասորին գրում է.

«Հայերը տիրապետում էին ամրություններ Սասունի լեռներում բազմաթիվ սերունդներե ի վեր։ Այդ տարի Թուրքերը մի մասը տիրապետեցին։ Մուֆարգինի էմիրն արգարև նրանց դեմ պատերազմեց, նա նրանց նեղեց և ծայր աստիճան սովի մրցրով ընկճեց, նրանք կամովին իրենց ամրությունները տրամադրում էին Խլաթի իշխան Շահի-Արմենին»[1]։

Այսպիսով, Վիգենն իր հաղթական պատերազմներով արտաքին զավթիչ թշնամիներին երկրից դուրս է վանել և մինչև խոր ծերության հասակը — մոտ վաթսուն տարի, կառավարել է Սասունի Թոնիկյան իշխանությունը, 1176 թ. մեռել, ինչպես վկայում է Ստեփաննոս Օրբելյանն իր «Ժամանակագրության» մեջ[2]։

Շահի Արմենն էլ ըստ Ստեփաննոս Օրբելյանի մահացել է ՈԼ (1181) թվականին.

«Զի ի ՈԼ թուին մեռանի հայոց աշխարհին (ա) մերայն՝ Շահի Արմենն անուանեալ, այսինքն թագաւոր հայոց...»։

Վիգենն ուներ երեք որդի, որոնցից մեկը՝ Գրիգորիոսը փոքր հասակում մահանում է։ Մյուս որդին «Զորտուանել լայնաթիկունք և հաստաբազուկը կհաջորդե իր հոր Վիգենին[3]։

Վիգեն Մամիկոնյանին հաջորդեց իր որդի Զորտուանել Բ.-ը (1176—1185)։

Զորտուանել Բ.-ի ժամանակաշրջանի Սասունի իշխանության մասին

---

կամ 13 կիլոգրամ, կողքերն արծաթապատ, սկիզբն պատկերովք և ծանոթությամբ, որ հին նոտր գրով գրված է, 12 թերթ հետո, մեկ երեսին վրա չորս պատկեր կա տղայոց, որոց առաջնույն վրա. «Վասակ որդի Վիգենայ» գրված է, դիմացինին վրա «Վասիլ որդի Զորտուանելին թոռն Վիգենայ» վարը 3-րդ պատկերին վրա՝ «Շահնշահ» և դիմացինին վրա՝ «և Թոռնիկ եղբարք Վասլին որդիք Զորտուանելի» գրված է։ Դիմացի երեսն ամբողջ մի պատկեր կա մորուսավոր մարդո, որո «Քրիստոս Աստուած աւագնեա Վեգենայ ծառայի քո» գրված է. պատկերաց վրայի հիշեալ գրվածք վերջերն և համրակ գրչե եղած կը կարծվի։ Ի վերջ չորից ավետարանչաց յիշատակարանը միջակ գրոջ «փառք և այլն... կատարեցի զսուրբ աւետարանս ի հայրապետութեան տեառն Ներսեսի Հայոց կաթողիկոսի և ի տէրութեանս Սասնոյ Վեգենայ մեծի պտաւն ուխսիմոսի որդւոյ Զորտուանելի թոռն Թոռնկայ մեծի հզաւրի և քաջի որ յԱստուծոյ հաստատուն հիմնակառուցեալ ունի զաթոռ հայրենի տէրութեան իւրոյ և ի թուականութեանս հայոց ի ՈԺԸ (1169) հրամանաւ երանելի և Քրիստոսասէր թագուհոյ մէկր սթոյ ամուսնոյ Վեգենայ, որ՝ յաղգէ Արծրունի և ի շառաւիղէ սրբոյն Վարդանա դուստր մեծի իշխանին Մոկաց Հմայեկի»։ Հետո կը շարունակի Վեգենա և զավակացն պատմությունը, և դստերն Կատայի մահը և ս. Փրկիչ անուն վանքի մը մեջ թաղվիլն և այլն, և այլն։ Եվս երկտողի մը մեջ, «զԲազմամեղ գրիչս» և զեղբայրն իմ վախճանեալս և այլն գրուած է։ Սոյն ավետարանին համար կըսեն թէ գետն ի վար (Եփրատեն) եկած է, բնած ենս։ (Հ. Կ. Ճանիկյան, Հնություններ Ակնա, Թիֆլիս, 1895, էջ 76–77)։

[1] Միխայել Ասորի, Ժամանակագրութիւն, Երուսաղեմ, 1871, էջ 361։

[2] Ժամանակագրութիւն Ստեփանոսի Օրբելեանի, Երևան, 1942, էջ 19։

[3] Մ. Չամչեան, Հայոց Պատմ., գ. հատոր, էջ 48 և Վարդան պատմիչ, էջ 124։

պատմիչները քիչ տեղեկություններ են հաղորդում և ականատես դեպքեր չեն նկարագրում։

Ձորտուանելը վաղ հասակում մեռնում է 1185 թվականին։

Ձորտուանել Բ-ին հաջորդում է իր երեք որդիներից Շահնշահը (1185—1207)[1], որն իր թագավորության սկզբից Խլաթի Շահի-Արմենների հետ բարեկամությունն ամրացնում է, նկատի ունենալով Սասունի թագավորությանն սպառնացող վտանգները, որոնք գալիս էին Էուբյան մելիքներից և Խորեզմի ներսում տիրող շահերից, սակայն շուտով մահանում է Խլաթի Շահի Արմենը։

Պարսիկները հարձակվում են Սասունի վրա։ Շահնշահը վերցնելով իր հետ Խլաթում գտնվող մարդկանց և զինվորականներին, շտապում է Սասուն, պատերազմի բռնվում պարսիկների հետ (1195), գերի վերցնում նրանց հրամանատար Բեկթամուրին, շղթայակապ տանում Սասուն։ Բեկթամուրը երդվում է այլևս չհարձակվել Սասուն-Տարոնի իշխանության վրա։ Շահնշահը նրան ազատ է արձակում և ուղարկում իրենց երկիրը։

Երբ Բեկթամուրը վերադառնում է Պարսկաստան և տիրում Շահի աթոռին, սկսում է իր թշնամական վերաբերմունքը դեպի Շահնշահը և հարկ պահանջում նրանից[2]։

Բեկթամուրի այդ քայլը և Սասունի վրա հարձակվելը մեծ զայրույթ է առաջացնում Զաքարի և Իվան սպասալարների մեջ, որոնք վրաց և հայ բանակներով հարձակվում են Բեկթամուրի և Խլաթում նստած նրա որդի Մելիք-Աշրաֆի վրա։

Դրանից հետո Սասունի Շահի-Արմենների, Իվանե և Զաքար սպասալարների ու Սասունի մյուս իշխանությունների միջև ստեղծվում է բարեկամական հարաբերություն։

Էյուբյան մելիքները Հիջրիի 604 թ. (1207—8) արշավում են դեպի հյուսիս, իրենց տիրապետության տակ վերցնելու Խլաթը, Տարոնը և Սասունը։ 1210—11 թթ. Մելիք-էլ-Աշրաֆը գրավում է Խլաթը և բարեկամություն հաստատում հայոց և վրաց հետ։

Թոռնիկյանների վերջին շառավիղ Շահնշահը Շահի-Արմենին (Միհրան շահի) հաջորդի՝ Շահի-Արմեն Բեկթամուրի հետ պատերազմելով, չի կարողանում պահել իր իշխանությունը, պարտվում է և իր ընտանիքով ու զորքի մի մասով նահանջում դեպի Կիլիկիա՝ Լևոն 2-րդի մոտ։ Վերջինս նրան հանձնում է Սելևկիան (այժմ Սելեվքե), իսկ Շահնշահի անդրանիկ եղբոր Վասիլին՝ հանձնում է Միս՝ (Միսիս) քաղաքը, որտեղ նրանք իշխում են, որպես ֆեոդալներ։

Էդվարդ Դյուլորիեն իր «Chronique du royaume de la Petite Armenie» աշխատության մեջ բերում է գրաբար հետաքրքիր վկայություն.

«Զայս ժամանակաւ եկին որդիքն Ծորտուանելի ի Սասնոյ քոյրորդիք Գրիգոր կաթողիկոսի հայոց առ պարոն Լևոն, արք բարետեսք։ Որ աւագին երետ զդուստր եղբօրն իւրոյ Ռուբենի՝ զանուանեալն Ալիծ (Ալէծ), և հօ նման զՄիս, որոյ անունն էր Հեթում. և Շահնշահին (Շահինշահին) երետ զՍելևկիա, և կրտսեր դուստրն Ռօբենի Ֆիլիպն, որ կայր առ մայրն Լևոնի»[3]։ Ըստ

[1] Հ. Ա., 1934, էջ 233։

[2] Վարդան Վ., Հավաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի լուսաբանեալ, Վենետիկ, ս. Ղազար, 1862, էջ 133։

[3] *Dulaurier E. Chrow,* Matth. d'Edesse, Paris, 1856. page 629.

Դյուրրիեի այդ դեպքը տեղի է ունեցել 1189—1190 թթ.։ Նույն հեղինակը Զորտուանելի որդիների մասին դրում է.

«Մեռան և մեծ իշխանք քեռորդիքն կաթողիկոսին՝ պարոն Հեթում և պարոն Շահնշահ. ի մէկ ամիս՝ քեռին և քոյրորդիքն։ Եւ զոր լուաք վասն մահուանն՝ չկտրեմ աստ դրել, զի ասէն թէ պարոն Լեւոն եղև պատճառ. այլ զճշմարիտն Աստուած դիտե»[1]։

13-րդ դարի սկզբներին կործանվում է և Շահի Արմենների խլաթի թագավորությունը և Սասունի Թոռնիկյան իշխանությունը։

* * *

Թոռնիկյանների ժամանակ Սասունում խորանում են ֆեոդալական հարաբերությունները։ Ինչպես Հյուսիսային Հայաստանում 12—13-րդ դարերում քաղաքական կարևոր դեր խաղացին Զաքարյաններն ու Վայոց Ձորի Օրբելյանները՝ շնորհիվ Վրաստանի հովանավորության, այնպես էլ Հարավային Հայաստանում 11—13-րդ դարերում։ Սասունում Թոռնիկյանները ուժեղ ֆեոդալական մի իշխանություն էին կազմել և քաղաքական խոշոր դեր էին կատարում։

Այս իշխանության տերիտորիայում բնակչությունն ավելացել էր ի հաշիվ շրջապատի բնակիչների։ Նրանք, որպես ավելի ապահով վայր, կենտրոնանում էին Թոռնիկյանների իշխանության հովանու տակ՝ ուժեղացնելով այն որպես ինքնուրույն ֆեոդալական պետություն, որին ենթարկվում էին երկրի մանր ֆեոդալ կալվածատերերը։ Վերջիններս Թոռնիկյան իշխանների համար կատարում էին զինվորական և հարկային պարտավորություններ թե՛ պատերազմական և թե՛ խաղաղ պայմաններում։

Թոռնիկյան իշխանները հանդիսանում էին երկրի միահեծան տերը՝ ժառանգական իրավունքներով, նրանք կոչվում էին թագավորներ հայ և արաբ պատմիչների կողմից։

Պողոս Տարոնացու տվյալներն իր ժամանակակից հայ իշխանների՝ Թոռնիկ Մամիկոնյանի, Տաճատի, Բակուրի և Զորտուանելի մասին, ցույց են տալիս, որ Սասունի Թոռնիկյան իշխանությունը ճանաչված էր ինչպես բյուզանդական կայսրերի, (որոնք Նովիլիսիմոս կոչումն էլ էին տալիս նրանց), այնպես էլ պարսիկ թագավորների և արաբական ամիրաների կողմից. նա գրում է.

«Սորա-Ահարոնի-յաղթեալ ի չար խորհրդոց իւրոց, արար զքննութիւն հավատոյ ընդ մեծի իշխանին հայոց ընդ Ծորտուանէլն և ընդ թագաւորին Սասնոց, և կամեցեալ մաքառիլ թղթով ընդ ազգիս հայոց, ինքեամբ ոչ կարացեալ, այլ ստիպեալ զոմն թարգմանիչ յոյն լեզուի, որոյ անունն՝ Թեոփիստես յորչորչիւր. այր իմաստուն և հանճարեղ, պատուաւոր՝ և քաջաբան, կորովաբանիւք և հմուտ լեզուիս հայոց և հոռոմոց։ Զսա հարկեցեալ առ ի գրել զթուղթ վիճաբանության հոռոմոց՝ ընդ հայս. և բերաւ առ իշխանն հայոց ի սասուն։ Եւ ընթերցեալ Ծորտուանելն զթուղթն. և վերահասու եղեալ ամ գրոց նամակին. և առաքեաց զթուղթն առ հռետորն Հայոց ի Պողոս՝ ի վանքն ոչ կոչի Ղազարու, մերձ ի գաւառին Տարօնոյ՝ որ էր վիճակ Սասնոյ»[2]։

[1] *Dulaurier E. Chrow*, Matth, d'Edesse, Paris, 1858, page 630.

[2] Պողոս Տարոնացի, *Թուղթ Երանելոյն Պօղոսի Տարոնեցւոյս, 1752, Կոստանդինուպոլիս, էջ 330—331։*

Պողոս Տարոնացին, խոսելով Ջորտուանելի մասին, նրան անվանում է «Թագաւորին Սասնոց», որից պարզ երևում է, որ և՛ արաբական խալիֆաթի և՛ պարսիկ շահերի և՛ բյուզանդական կայսրերի ժամանակ Սասունի Թոռնիկյանները թագավորություն էին կազմել և ոչ թե սոսկ մի իշխանություն կամ ֆեոդալական ժառանգական մի նախարարություն։ Պողոս Տարոնացին նույն աշխատության «Սահմանք աշխարհացն հայոց ցուցանի» մասում գրում է.

«Եւ ի հարավային կողմանէն քաղաքն Մրծբին, որ այժմ ասի Մսէպին. յորում կա ի նմա գերեզմանն հայոց թագաւորին Վաղարշակայ. և կամ որոյ է շինած աշմուշատ մոտ առ ձեզ»[1]։

Թագավորը կամ իշխանը ռազմական ուժերի գլխավոր հրամանատարն էր։ Նա հանդիսանում էր մյուս մանր ֆեոդալների և իշխանների միջև ծագող վեճերի քննողն ու վճիռ հանողը՝ գլխավոր դատավորը։ Թագավորն ու իշխանները, ազատները, ոստիկաններն ու կղերականները հանդիսանում էին շահագործող դասակարգը։

Ինչպես միջնադարյան ամեն մի ֆեոդալական իշխանություն կամ թագավորություն, Թոռնիկյաններն էլ ունեին իրենց բերդը՝ մայրաքաղաք Աշմուշատը Բալուում, որսավայրերը՝ Ծովասարում, Անտոկում, Կեփինում և Մարութա սարում, Ճապաղջուրի լանջերում։ Հասարակ մարդիկ՝ շինականներն իրավունք չունեին նույնիսկ մտնելու այդ «սեյրանատեղերը»։ Նրանց էին պատկանում Մշո դաշտի բազմաթիվ գյուղերը, որոնցից Բերդակը, Թոռնիկի որդի Ջորտուանելը տվել է Առաքելոց վանքին, որտեղ գտնվում է նույն իշխանների պանթեոնը։ Նրանց սեփականությունն էին նշանավոր բերդերը՝ Սասունի կամ Դավթի, Սուսանա (Ջուզա), Սմբատա, Աստղնբերդ, Սլկունի (Սլկունյաց) և այլ բերդերը, որոնք կառուցվում էին աշխատավոր շինականների արյուն-քրտինքով, կոռ ու բահրայով, հավաքված հարկերով։

Ազատներն ու ոստանիկները — ինչպես կարդում ենք «Թուղթ Պօղոսի Երանելւոյն» գրքում ինչպես նաև թագավորի ստորադաս զինվորականները, ունեին իրենց սեփական կալվածները և ճորտ գյուղացիները, որոնք ենթարկվում էին իրենց տերերին՝ «տանուտերերին»։

Շահագործող դասակարգին էին պատկանում նաև եկեղեցիներն ու վանքերը, որոնք կալվածներ և «մշակներ», այսինքն ճորտ գյուղացիներ ունեին։ Վանքերը, բացի իրենց կալվածներից և «մշակ» շինականներից, ամբողջ ազգաբնակությունից «պտղի» էին հավաքում վանքի միաբանների միջոցով։ Պտղի հավաքող միաբանները — կրոնական, թե աշխարհական, կոչվում էին նվիրակներ, որոնք տարին մի անգամ շրջում էին գյուղերն ու քաղաքները և հավաքում պտղին։ Պտղին վճարվում էր բնամթերքով, անասունով և փողով։

Վանական այդպիսի կալվածներ էին Առաքելոց (Ղազարի կամ Թարգմանչաց), Վանդիրի (ս. Աղբյուրիկ), Մարութա, Գոմուց, Ակթայի, Մատնավանքի և այլ վանքերը, որտեղ կենտրոնացված էին ժողովրդի հաշվին ապրող մեծ թվով միաբաններ։ Հոգևոր այդ կենտրոններն իրենց էին ենթարկում ոչ միայն անազատներին՝ ռամիկին և շինականին, այլև ազատներին՝ ոստանիկներին, նույնիսկ Թոռնիկյան իշխաններին ու թագավորներին։ Պողոս Տարոնացու և Վիգէն

[1] Պողոս Տարոնացի, *Թուղթ Երանելոյն Պօղոսի Տարոնեցւոյս*, 1752, Կոստանդինուպոլիս, էջ 272։

իշխանի զրույցը, Գր. Մագիստրոսի՝ Թոռնիկ Մամիկոնյանին ուղղած թղթերը, ցույց են տալիս կղերականների ազդեցությունը Թոռնիկյան իշխանների վրա։

Շահագործվող դասակարգը կազմված էր անազատներից՝ աշխատավոր գյուղացիներից, արհեստավորներից և մանր առևտրականներից, որոնք ռամիկներ էին կոչվում։ Անազատները կատարում էին ոչ միայն գյուղատնտեսական, անասնապահական աշխատանքը, արհեստավորական ու առևտրի գործերը, այլև պետության կամ տան տիրոջ համար աշխատում էին ձրի։ Ինչպես երևում է Պողոս Տարոնացու և Գրիգոր Մագիստրոսի թղթերից, «անազատ» կոչումը ստրուկ կամ իրավազուրկ չէր նշանակում։ Անազատն ուներ որոշ իրավունք, որը հաշվի էր առնվում տիրող դասակարգի կողմից։ Անազատներին՝ շինական և ռամիկներին, ռազմական հարցերի քննարկմանը մասնակից էին դարձնում։ Արտաքին և ներքին իրադրությունը Թոռնիկյան իշխաններին ստիպում էր կռվի պայմաններում հաշվի առնել շինականներին և ռամիկներին, որովհետև բանակը մեծ մասամբ կազմված էր նրանցից։ Թոռնիկյանների այս վերաբերմունքը դեպի ռամիկներն ու շինականները, անշուշտ չէր կարող կանխել դասակարգային սուր բախումները Սասունի այդ իշխանության ներսում։ Թոռնիկյաններն ստիպված էին այդպես վարվել, որպեսզի արտաքին վտանգների առկայության դեպքում կանխեին շահագործվող դասի ապստամբական շարժումները։

Սասունի ազգաբնակչությունը, ինչպես տեսանք, բացի տեղական հարկից, հարկ էր վճարում նաև արաբ խալիֆաներին։

Արաբական, ինչպես և ամբողջ մուսուլմանական աշխարհի նշանավոր պատմիչներից մեկը՝ Աբուլ-Աբաս Ահմեդ իբն Յահյա իբն ջաբիր ալ-Բալաձորին, որ մեռել է 892 թ., իր «Քիթաբ ֆուտուհ Ուլ-բոլդան, (գիրք երկրների նվաճման) երկում գրում է, թե նվաճված երկրներից արաբները, բացի դրամական և նյութական հարկերից, պահանջում էին և «սևահեր, սևահոն երկար արտևանունքներով և բարձրահասակ» աղջիկներ ու պատանիներ [1]։

Արաբ պատմագրի այս երկու տողը հիշեցնում է «Սասունցի Դավիթ» էպոսի մեջ Մսրա-Մելիքի հրամանը իր կոզբադինին.

«Գելնիս, կերթաս Սասուն.
Կը բերիս օխտը տարվա խարաջ՝
Քառսուն երգան կընկտիք՝ մըզի ուղտեր բառնան.
Քառսուն կարճ կընկտիք մըզի երկանք աղան.
Քառսուն կույս աղջիկ, մըզի արմաղան
Ու Մանուկի աջ բազուկ,
Ու Դավրի գլուխ» [2]:

Սասունի Թոռնիկյան իշխանության ժամանակաշրջանում աշխուժացավ ներքին և արտաքին առևտուրը։ Առևտրական ճանապարհները դեպի արևելք անցնում էին՝ Աշմուշատ—Ճապաղջուր—Տարոն—Տուրուբերան—Վան և Բիթլիսի (Բաղեշ) վրայով, դեպի արևմուտք՝ Մելիտինե—Խարբերդի վրայով, դեպի

[1] Պրոֆ. Աբեղյան. Սասնա ծռեր, Ա հատոր, էջ ԺԷ 17-ից ԺԹ 19-ը։

[2] Մ. Աբեղյան. Կ. Մելիք-Օհանջանյան. Սասնա ծռեր, 2-րդ հատոր, Երևան, 1944, էջ 378։

հարավ՝ Տիգրանակերտի (Նփրկերտ կամ Միաֆարկին) և Սլիվանի վրայով Դիարբեքիր և Հալեպ, իսկ դեպի հյուսիս՝ Մուշ—Կարինի վրայով դեպի Տրապիզոն։

Շնորհիվ այդ առևտրի՝ Աշմուշատը, Արտաշենը, Մուշը, Հազզոն-Հազրոն և Հայնին (կաթողիկոսանիստը) դառնում են առևտրական կենտրոններ։ Առևտուրը կատարվում էր քարվաններով, որոնք երկրի խորքն էին տեղափոխում բամբակ և բամբակեղեն գործվածքներ, զենք և զարդեղեններ, համեմունքներ և անուշահոտ խունկեր (հարավից)։ Արտահանվում էին անասուններ՝ ձի, ջորի, մանր և խոշոր եղջերավոր անասուններ, կաթնեղեն, իսկ բուսական՝ գրղտոր-կաշի դաբաղելու համար — անտառանյութ և արմտիք (Մշո և Բալուի դաշտերից)։

Առևտրական հարաբերությունները զարկ էին տալիս նաև արհեստների զարգացմանը։ Սասունի երկաթահանքը նպաստում էր դարբնությանը՝ սառը զենքերի և երկրագործական գործիքների պատրաստմանը, քարհանքների առատությունը՝ քարտաշության և որմնադրության, իսկ կավահողերի առատությունը (Մշո դաշտ)՝ բրուտության, կավագործության։ Շնորհիվ տեղական բրդի, մազի և Սլիվանից ներմուծվող բամբակի՝ զարգանում էր ջուլհակությունը։ Այնուամենայնիվ Սասունում տիրապետում էր ինքնամփոփ տնտեսությունը։

* * *

Թոռնիկյան իշխանության շրջանում նկատվում է գրականության և արվեստի որոշ աշխուժացում։ Սասուն-Տարոնում գոյություն ունեին վանքեր (ս. Կարապետ, Ս. Հովհաննու, Առաքելոց կամ Ղազարու, Վանդիրի կամ ս. Աղբյուրիկի, Մատնավանք, Գոմա կամ Գոմուց վանք, Մարութայի, Մարապու, Ակթայի կամ Սկիհյաց և Խնատի), որոնք հանդիսանալով ֆեոդալական կղերական կուլտուրայի կենտրոն, ունեին դպրոցներ։

Այդ վանքերը տվել են հայ կուլտուրայի մի շարք ներկայացուցիչներ, դրանցից հիշենք հետևյալները.

**Կարապետ Սասնեցի** (12-րդ դ.)։ Թոռնիկյան իշխանության ժամանակաշրջանի պատմաբան, որ օգտվելով Կորյունից և Խորենացուց գրել է Մեսրոպ Մաշտոցի մասին մի աշխատություն։

**Եսայի Նչեցի**։ Ծնվել է Սասունի Մոտկանի շրջանի Նիչ կամ Նիշ գյուղում, երկար տարիներ եղել է Գլաձորի (Գայլեձորի) վանքում աստվածաբանության, քերականության և փիլիսոփայության ուսուցիչ։ Նա 55 տարի ղեկավարելով Գլաձորի դպրոցը, պատրաստել է մեծ թվով աշակերտներ։ Եսային իմացել է մի շարք լեզուներ. լավ ծանոթ է եղել հունական գրականությանը և փիլիսոփայությանը։ Ուսումնասիրել է Արիստոտելի և Պլատոնի գործերը։ Նրան կոչել են «եռամեծ փիլիսոփա»։ Եսայի Նչեցին այնքան էր հռչակված, որ ժամանակի թվագրությունը նշելիս՝ տվյալ ժամանակի թագավորների, իշխանների ու կաթողիկոսների հետ հիշում էին նաև նրա անունն ու դպրապետության կամ դասապետության տարին։ Գլաձորի համալսարանը գոյություն է ունեցել մինչև 1338 թ., Եսայի Նչեցու մահվան տարին։

**Պողոս Տարոնացի** (11-րդ դ.)։ Առաքելոց վանքի վանահայր, Թոռնիկյան իշխանության Չորտուանելի ժամանակի կղեր-փիլիսոփա, որին Թոռնիկյան

իշխանը հունական, քաղկեդոնական, կրոնական վիճաբանությունների ժամանակ օգնության էր կանչում։ Նրա «Թուղթ երանելույն Պողոսի Տարոնացւոյ Յաղթող Ախոյան վարդապետի, ընդդեմ Թեոփիստե Հոռոմ փիլիսոփային» աշխատությունը իր ժամանակի կղերա-աստվածաբանական ճանաչված գործերից է եղել։

Ջորտուանելը Առաքելոց վանքի «Ծառընտիր»-ում թողել է մի հիշատակարան, որը պարունակում է ուշագրավ փաստեր։ Ծառընտիրը, որ այժմ գտնվում է Մատենադարանում, գրեթե անընթեռնելի է։ Նկատի ունենալով Ջորտուանելի հիշատակարանի կարևորությունը, պատմական գիտությունների թեկնածու ընկ. Լևոն Խաչիկյանը և մենք դժվարությամբ ընթերցելով այն, արտագրել ենք և ներկայացնում ենք ստորև.

Ահա այդ հիշատակարանը.

«Բարձրա դիր և մեծի… հայոց Ջորտուանելի, որ ի Մամիկոնոյ։ Քանզի ես… մաւուրց լեալ տիրեալ… ում տարաւնոյ և այլ զաւրավիգն ունելով զքո ես հրամանաւ ինքն անգիտեցի ի սպառ… իմայելացոց… եալ կողմին ընդ սբ (22 տող կտրված է և չի կարդացվում)։

Բուրաստանաւք այգեստանաւք այս սինաւոռվս արեւելեանն ընդ Մոաւնո սպիտակ քարերն և իջանէ ի տանձի ձորն կարմիր փոսովն ի վայր մինչ ի յատամն և երթալ յատամն ուր խաչն է Դաւթին. և անդի ի սեղնաքարն և անդի յոսկեծամին թունդ խաչն և երթա ի սնձնին վերև Նորշենի գերեզմանացն և արևմտեան ձորն առղայ և հարավայինն խաչն Գոմրգին… դաշտն . . . . նրի հորիանդ զջերմաջուրն ջաղացքն երկու ակնեան. մնացական հայրենիս ՍԲ առաքելոցն Ղազարու վանիցն յիշատակին ձև ծնողաց իմոց տաճատայ մամիկոնոյ և մաւրն իմ զարմանդըխտոյ և նախնեաց իմոց քաջարանցն վեսերո և մեհերա, որք առաջ քան զմեզ տէր էին այսմ աշխարհիս քանզի այս Բերդակ գեղս տեղիք էին զուարճանալոյ բուսաց ծառոց և մրգոսք անուշիւք նախնեացն իշխանաց մամիկոնէից և մայրն իմ զարմանդխտի նոյն գեղի էր երկնել վիս յաշխարհ և էր տեղիք ծննդեան իմոյ։ Թէպէտ և բազմատեղեաց ունեաք իշխանութիւն և այլս տեսակ ինչ զայս համարեցաւք զտեղի ծննդեան իմոյ և գին մեղաց իմոց և հող փոխանակ հողոյ ծածկել զհողացեալ մարմինս իմ զի որով ծնա ի յայս Բերդակ մարմնով մահկանացու։ Դարձեալ լինի սա ինձ պատճառ վերստին ծննդեան իմում ի կեանս անմահական վասն այնո սեփականեցի զսա ընդ իմ լինել կենդանի ծառա և սատարել ՍԲ տեղացն մինչ զյաւիտեան սակս թաւշակի միանձնաւորաց և այլոց երթևեկաց զսա յեղին ինձ վարշամակ սեղանոյ. ջնջել առ սովաւ զախտ թարախ մեղաց իմով շնորհաւք (15 տող չկա).

. . . . . . . . . . . . .

նեայք տն այ մեծին, որք կարդայք և լսեք զգիրս զայս տեսանէք մի վարկ պարաղի ընդոտն հարկանէք և ընդ վայրըս մարէք և ունայն զնշանագիրս և զաղաչանս որ վասն այստեղիս որ ի գրիս է նուիրած այս ՍԲ առաքելոցն ի զինս մեղաց իմոց զի ի բազում ստացուածոց մերոց զոր ունեաք դանձս բազումս և այլ քաղաքս գեղք և ագարակ և բազում մեծութիւնս զարդս և հանդերձս պատասխանո զայս գեղս միայն եմ առեալ ինձ յայս կենաց աշխարհիս ի թաւշակ հոգւոյ իմոց այնմ աշխարհին և զայլ բազում մեծութիւնս և զիշխանութիւնս թողեալ եմ իմոյդ և այլոց, որք տէր եք յաթոռ մեր և ի տեղի և ես յաշխարհիս դաւոարկ և մերկ և ունայն կու գնամ, զի որք կարդան և լսեն ի սմանէ ընդունեն և հաստատ պահեն զաւանդեալս ի մէնջ, նոքա հաստատին ի վերըստին,

յայս՝ անմահին այ. ժառանգեն ղկեանս անվախճան, վայելով զանանց բարութեան արքայութեան ղարդարեալ պսակին ի քէ այ մերոյ ընդ սրբոյ առաքելոյն և մարգարէին։ Ապա եթէ ոք յիշխանաց կամ ի բռնակալաց ոք իցէ և տիրեսցէ այժմ աշխարհիս մերում և կարդասցէ զվերոգրեալս ի մէնջ և չընդունին և ընդ վայր հարկանեն արկանեն զգիր աղաչանաց մերոց, և ջանան կրտրել զսա։ Կամ ի բաց հանել զգեղս զայս ի ՍԲ առաքելոցն, զոր ոչ հրամայեցաք կտրէ զնոսա ած ընդ մեզ և զմասն նոցա ընդ կողոպտիչն սրբոց և յահագին աւուր դատաստանին, ընդ ամենայն մեղաց և յամենայն տոհմի դիմում. ինքեանք տացեն պատասխանի, և մերկ և թափուր մնան յիւրեանց բարի գործոյն վճարեն յանշեջ հուրն և ի տարտարոսն սառնամանիք, ուր լալ ազանց է և կրճտել ատամանց։ Բայց աղաչեմ զամենեսեան չկողոպտել զմեր սակաւ սատարս իչ մեր բազում մեծութենէս բարձաք երկնաւորին նուիրեցաք թաւշակս սովացեալ ոգուց մերոց և մեզ այս փոքրիկ նուէրս շարակնեալ յափըշտակէք զի մի և դուք ի յերկնաւորին փառացն զրկեսջիք և դատապարտեսջիք ի ՍԲ առաքելոցն այլ լինել սմա զաւրաւիգն և իրաւացի զի հաստատ կացե ամենեւին յաւէտ։ Դարձեալ և թէ ոք առաջնորդ եպիսկոպոս լիցի ուխտին կամ թէ հայր վանուց կամ ձեռնաւոր կրաւնաւոր և յաղագս եթէ պատճառանաց զվերոգրեալ գեղս ծախէ կամ գրաւէ, կամ յայդեաց կամ յանդաստանաց սորա, կամ զչրաղացն երկու. ակնեան ծախեն կամ գրաւ դիցեն, լուծցին և նոքա ի ժառանգութենէ......ցն յաւիտենից և մի լիցի նոցա մասն ընդ սրբոց առաքելոցն»[1].

Առաքելոց վանքի պատմական արժեք ներկայացնող ձեռագրերը («Ծառընտիրը», «Թուղթ երանելւոյն Պօղոսի Տարոնացւոյ» փիլիսոփայական աշխատությունը ուղղված հույն փիլիսոփա Թեոփիստէի և քաղկեդոնականության դեմ, Թոռնիկ Մամիկոնյանին ուղղված «Մագիստրոսի թղթերը»), ցույց են տալիս կղերա-ֆեոդալական կուլտուրայի զարգացման որոշ աստիճանը, որում գտնվում էր այդ ժամանակ Թոռնիկյան իշխանությունը։ Մյուս կողմից տվյալ ժամանակաշրջանի ծնունդ է, «Սասունցի Դավիթ» էպոսը, որը վկայում է աշխատավոր «ռամիկ» շինականի ստեղծագործական մեծ կարողության մասին։

Արվեստի, փորագրության, գծագրության արժեքավոր մի նմուշ է Սասունի Առաքելոց վանքի դուռը, որ մեզ հասել է Թոռնիկյան այդ շրջանից։

Զորտուանելի որդի Վիգեն իշխանի ժամանակ (1134) այդ դուռը քանդակել և փորագրել են «Տեր-Թորոս և Գրիգոր և Ղուկաս» քանդակագործները։ Այդ դուռը, որը այժմ Հայկական ՍՍՌ ԳԱ Պետական Պատմական թանգարանի կողմից ժամանակավոր ցուցադրության համար ուղարկված է էրմիտաժ, հանդիսանում է քանդակագործության մի փայլուն նմուշ։

Առաքելոց վանքի դուռը երկփեղկանի է, փայտից պատրաստված և ամրացված է աջ և ձախ կողմի նույն փայտից շինված շրջանակին՝ ըստ իրկայնության։ Դռան լայնքի վերևի շրջագիծն ագուցված է կողքի շրջագծին, իսկ ցածրի մասը, սեմը չկա, հավանաբար և չի եղել։ Դռան աջ և ձախ փեղկերի վրա փորագրված են որսի կենդանիներ՝ եզ և գոմեշներ, ձախ փեղկի վրա, աջ կողմում՝ վայրի կենդանիներ՝ առյուծ, գայլ, աղվես։ Վերևի ճակատի փեղկի աջ անկյունում մի դրախտահավ թռչուն, որից դեպի ձախ չորս հեծյալներ,

[1] ՀՍՍՌ Մատենադարան, ձեռագիր № 7729, գրիչ Վարդան, Ղազարու վանք, 1073 (ՇԻԲ), Ս հատորի հիշատակարան։

որոնց մեջտեղը կանգնած է ռազմի շեփորը հնչեցնող մի զինվոր։ Աջ կողմի առաջին ձիավորն ունի գուրզ աջ ձեռքում և վահան՝ ձախ ձեռքում։ Նրա դիմացը մի այլ ձիավոր, որի ձիու փորի տակից գալարվող անցնող վիշապի գլուխը հասնում է ձիու գնչի մոտ, իսկ ձիավորի նետի ծայրը խրվել է վիշապի գլխի մեջ։ Գալարվող վիշապի պոչը ձիու հետույքի կողմից բարձրանում է վեր, փաթաթվելով ձիու ոտքերին և հետույքին, հասնելով ձիավորի ձեռքին մնացող երկար նիզակի կոթին, որ գտնվում է ձիավորի աջ ձեռքում։ Ձիավորը ձախ ձեռքով խրտնող ձիու սանձն է ամուր բռնել։ Մեջտեղ կանգնած հետիոտն զինվորը, դեպի ձախ (վիշապի գտնված տեղից) դարձած, ռազմական շեփորն է հնչեցնում։ Դեպի ձախ, երրորդ ձիավորը մերկացրած թուրը հորիզոնական ուղղած, ձիարշավ է գնում իր առաջից սուրացող ձիավորի ետևից, որը նույնպես արագ արշավում է, բայց թշնամի չէ։ Թե՛ ձիավորները և թե՛ ռազմի շեփորը հնչեցնողը գդակ ունեն դրած իրենց գլխին, տափակ, ոչ բարձր գդակներ, որոնց շուրջը փաթաթված է փուշի, որի ծոպերը դեմքի ետևի մասում՝ ականջների մոտից կախված են։

Տեսարանը ռազմերթ է ներկայացնում՝ ճակատի փեղկի մասում, իսկ եզերքների աջ և ձախ փեղկերում ընտանի և վայրի կենդանիներ, որից որսերթի տպավորություն է ստացվում, բայց նետահար եղածը միայն հսկա վիշապն է։

Դռան երկու փեղկերից յուրաքանչյուրի վրա փորագրված են ութանկյուն հավասար բազմանկյուններից չորսական հատ՝ տեղավորված յուրաքանչյուր փեղկի վրա։ Ութ հավասարակողմ բազմանկյունների վրա նկարված են ութթև աստղեր, որոնց շուրջը հավիտենականության նշանը՝ ութաձև ∞։

Դռան և փեղկերի երեսները նուրբ զարդերի փորագրումներ են, իսկ պատկերվող անասունները, ձիերը և ձիավոր, թե հետիոտն մարդիկ նուրբ և բնական են քանդակված։ Քանդակում պատկերված մարդիկ այնքան բնական են, որ նրանց միջոցով հնարավոր է գաղափար կազմել ժամանակաշրջանի տարազի մասին։

Մեր կարծիքով Առաքելոց վանքին Թոռնիկյան Վիգենի կողմից նվիրված այս դուռը նրա զորքն է պատկերացնում՝ փորագրված փայտի վրա։

Սասունի Թոռնիկյան շրջանից է մնացած Առաքելոց վանքի «Ճառընտիրը», Ղազարու վանքի գրիչ՝ Վարդանի գրած ձեռագիր-երկաթագիր մագաղաթյա գիրքը, որի ծանրությունը 32 կիլոգրամ է կշռում, իսկ ձեռագիրն ու զարդագրերը կատարված են շատ բարձր արվեստով։ Այդ գիրքը գտնվում է Հայկական ՍՍՌ Մատենադարանում (№ 7729)։

Մատենադարանում գտնվում են Թոռնիկյան իշխանության շրջանում գրված մի շարք ձեռագրեր, ինչպես՝ 2684 (գրված 1159 թ. Տարոնում «Գրիգոր Նիւսացւոյ» կողմից), № 8885-ը (գրված Սասունի Հազզո քաղաքում, գրիչ՝ Մարգար Աբեղայի կողմից), № 4107 «Ճաշոցը» (գրված գրիչ Սարգիս քահանայի կողմից Գլակա կամ ս. Պարապետ վանքում), որոնք ցույց են տալիս Սասուն-Տարոնի կուլտուրայի պատկերը Թոռնիկյանների ժամանակներում։

Սասունի նախաթոռնիկյան և Թոռնիկյան իշխանության ժամանակաշրջանի բանահյուսության անմահ կոթողն է հանդիսանում համաշխարհային կուլտուրայի գանձերից մեկը՝ «Սասունցի Դավիթ» էպոսն իր յոթնասուն վարիանտներով, որը հայտնի է ոչ միայն Սովետական Միության եղբայրական ժողովուրդներին, այլև ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկությանը։